# ՉԱՀԱԿԻՐ

**ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ**

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.ع.م - ت ٩١٥٠١٣
صاحبة الامتياز : السيدة عايدة سيرديان (بالايان)

TCHAHAKIR
HEBDOMADAIRE ARMENIEN
B.P. 2111 Le Caire (R.A.U.) · Tél. 915013
Adresse Télégraphique. TCHAHAKIR, Cairo
Rédacteur en chef; SARKIS BALAYAN

Արտօնատէր — ԱԻՏԱ ՍԵՐՈՎԲԵԱՆ
Սեփականատէր խմբագիր — ՍԱՐԳԻՍ ՊԱԼԱԵԱՆ

Հիմնուած 1948ին
Տպաքանակ 3000

ՆՈՐ ՇՐՋԱՆ ԹԻՒ 251 — ՀԻՆԳՇԱԲԹԻ 24 ՀՈԿՏԵՄԲԵՐ 1968

ՀԱՏԸ ՉԵՌՈՒՏ 2,5 Եգ. Դհկ. Կամ 25 Լիբ. Դհկ.

عدد رقم ٢٥١ — الخميس ٢٤ أكتوبر ١٩٦٨





# ՈՂՋՈ՛ՅՆ, ՍԻՐՈՒՆ ԵՐԵՒԱՆԻ 2750 ԳԱՐՈՒՆԻՆ

ԱՐՄԷՆ ՏԱՏՈՒՐ

Նեղոսի կանաչ ու աւազ ափերէն՝ բարե՛ւ Երեւանին։

Հրճուանքով, կարօտի արցունքով ու արդար հպարտութեամբ կը տօնենք այս օրերուն՝ 2750 ամեակը քաղաքամայր Երեւանի՝ անոր մաղթելով հազար հազար արեւ։

Աւեր ու փոշի են մեր պատմական Հայրենիքի մայր քաղաքները՝ ուր ապրեցաւ, երգեց ու ստեղծագործեց հայը։

Գոհար Անիին աւերակնե՛րն անգամ խլուած են մեզմէ անգութօրէն։

Ու որքա՜ն դժբախտ և ուղեկորոյս պիտի ըլլայինք, ո՛րքան պիտի զգայինք մենք մեզ՝ եթէ չունենայինք մայր Երեւանը։

Եթէ վեհափառ Արարատը հրաշակերտն է Բնութեան, վերապրելու Ուխտը հայութեան, լեռնացած Ցաւերժութիւն, մեր Տառապանքն ու Երազը դէպի Երկինք հասցնող Կոթողն անսասան, ծեր Մասիսին դիմացը սակայն ունինք մեր ապրո՛ղ Երեւանը, մի՛շտ աճող, մի՛շտ բարձրացող։

Երբ մութի մէջ է Արարատը, ողողուած է Երեւանը հազար հազար աստղերով՝ որոնք կարծէք թէ վար են իջեր երկինքէն՝ որպէսզի միշտ լուսաշող ըլլայ Ամենայն Հայոց Մայրաքաղաքը շքեղ։

Մատի վրայ կը համրուին աշխարհի վրայ այն քաղաքները՝ որ այնքան աճած ու բազմամարդ դարձած են, ըրած հսկայ ոստում՝ փոշիէն, սովէն, գերութենէն ու խաւարէն՝ դէպի մաքրութիւն, լիութիւն, ազատութիւն, դէպի մեծ ու աղուոր յոյսերով Ապագան, որքան Երեւանը կէս—դարեան Սովետական շրջանին։

Մայրաքաղաքը տարածուած է հինին երեսուն անգամը եւ բնակչութեան թիւը անցած եօթը հարիւր հազարը—որ իր մէջ կը հաշուէ այնքան համալսարանական ուսանող՝ որքան բնակիչ ունէր նախկին Երեւանը։

Ընդարձակութեան ու թիւի անհամեմատ աճին հետ՝ հրաշալի են նաև քաղաքամայրին նուաճումները՝ մշակութային, գիտական եւ արդիւնաբերական կալուածներուն մէջ։ Փաստերը պերճախօս կերպով կը վկայեն որ հայ շինարար ժողովուրդը իր հանճարին հետ շաղուած քրտինքով տարբեր է այս հոյակապ Ցաղթանակը՝ Խաւարին ու Թշուառութեան դէմ։

Ու այն անծանօթ, դժբախտ ու գերի՛ քաղաքը, որ գնդասե՛ղն անգամ կը ներածէր օտար երկիրներէ, որ հազարամեակներ պահեր էր իր նախնական վիճակը՝ այսօր մրցակիցն է դարձեր ամենէն արդի քաղաքներուն՝ իր արգասաւոր տնտեսութեան շնորհիւ։

Արդէն վաթսուն և աւելի երկիր կը հասնին երեւանեան արտածումները, առանց հաշուելու ներքին շուկան՝ Սովետական Միութեան միւս հանրապետութիւնները։ Երեւանցի մասնագէտները իրենց պատուաբեր բաժինը կը բերեն բարեկամ երկիրներու մէջ շինարարական, տեղագրական եւ այլ աշխատանքներուն՝ որոնց մէկ ամենէն փայլուն օրինակն է Ասուանի Բարձր Ջրամբարը՝ անսասան Կոթողը Արաբ եւ Սովետական ժողովուրդներու բարեկամութեան։

Մեր հայրենասիրութեան ու հպարտութեան աղբիւրն է այսօր Երեւանը՝ խորհրդանիշը ապրող հայութեան վերածնուած Հայաստանին։

Չկայ հայ մը՝ որ չսիրէ Երեւանը։ Օտա՛րն անգամ հիացումով կը խօսի անոր մասին։ Ուրի՛շ տեսակ հայ մըն է ան՝ որ անտարբեր է Ամենայն Հայոց Մայրաքաղաքին հանդէպ. չի խօսիր Երեւանն իր սիրտին. թէեւ, իրենց մայրը չսիրողներ ալ կան աշխարհի վրայ…։

Հեռաւոր այս երկրի արեւոտ ափերէն, անվերապահ սիրով ու անհուն կարօտով մասնակից կ'ըլլանք քաղաքամայր Երեւանի 2750 ամեակի մեծաշուք հանդիսութեանց ու հրճուալից կը դարձնենք մեր դէմքը դէպի Երեւան՝ յաւիտենական հայութեան սիրելի մայր Քաղաքը։ Կը յայտնենք մեր հայրենիքի հանճարեղ ու շինարար ժողովուրդին եւ անոր հայրենասէր ղեկավարներուն մեր անհուն շնորհակալութեան ու երախտագիտութեան ջերմ զգացումը։

Շէն ու խաղաղ օրեր՝ որպէսզի զօրանայ ու շքեղանայ Երեւանը, զա՛րդը՝ Ցոյսի ու Լոյսի համար մեր մղած դարաւոր ու դիւցազնական պայքարներուն փառապսակ՝ Սովետական Հայաստանին։

Թող մի՛շտ բաբախէ կեանքով ու երգով Սի՛րտը հայութեան, սիրուն Երեւան։

19 Հոկտ. 1968



«ՍԱՍՈՒՆՑԻ ԴԱՒԻԹ»
գործ՝ ԵՐՈՒԱՆԴ ՔՈՉԱՐԻ

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ ՊԱՐԳԵՒԱՏՐՈՒԵՑԱՒ ԼԵՆԻՆԻ ՇՔԱՆՇԱՆՈՎ

Սոսի անխառն հաճոյքով կը տեղեկանանք, որ Ս. Միութեան Գերագոյն Սովետի Նախագահութեան որոշումով, Հոկտեմբեր 16ին, երկրորդ անգամ ըլլալով Լենինի շքանշանով պարգեւատրուած է Հայ ժողովուրդի Մայր Հայրենիքը Ս. Հայաստանը:



Ս. Հայաստանի՝ Լենինի շքանշանով բ. անգամ պարգեւատրման առթիւ, Երեւանի Լենինի անուան հրապարակին վրայ 17 Հոկտ.ին կայացած մեծ միթինկէն նկար մը

Այս յոյժ պատուաբեր պարգեւատրման առթիւ՝ «Ջահակիր», յանուն իր բոլոր աշխատակիցներուն եւ ընթերցողներուն, ջերմօրէն կը շնորհաւորէ հայրենիքի ղեկավարներն ու շինարար ժողովուրդը, մաղթելով նորանոր յաջողութիւններ եւ բարձրաթռիչք նուաճումներ։

## ՍՍՀՄ ԳԵՐԱԳՈՅՆ ՍՈՎԵՏԻ ՆԱԽԱԳԱՀՈՒԹԵԱՆ ՀՐԱՄԱՆԱԳԻՐԸ

### ՀԱՅԿԱԿԱՆ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹԻՒՆԸ ԼԵՆԻՆԻ ՇՔԱՆՇԱՆՈՎ ՊԱՐԳԵՒԱՏՐԵԼՈՒ ՄԱՍԻՆ

Տնտեսական ու կուլտուրական շինարարութեան ասպարէզում հանրապետութեան աշխատաւորների ձեռք բերած յաջողութիւնների համար՝ ՀԱՅԿԱԿԱՆ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹԻՒՆԸ պարգեւատրել ԼԵՆԻՆԻ շքանշանով։

ՍՍՀՄ Գերագոյն սովետի նախագահութեան
նախագահ՝ Ն. ՓՈՏԿՈՐՆԻ

ՍՍՀՄ Գերագոյն սովետի նախագահութեան
քարտուղար՝ Մ. ԳԷՈՐԳԱՁԷ

Մոսկուա, Կրեմլ
16 Հոկտեմբերի 1968 թ.

## ՏԵՍԵ՞Լ ԵՍ ԴՈՒ ԵՐԵՒԱՆԸ

Տեսե՞լ ես դու իմ հայրենի
Երեւանը, սիրելի՛ս,
Թէ չես տեսել, հապա ինչո՞ւ
Մի օր ինձ հիւր չես գալիս։
Արի՛, գնենք մի իրիկուն,
Հրապարակը մտիր,
Շատրուանի կողքին կանգնիր
Ու ջուրս բոլորդ դիտեր։
Հազարերանգ լոյսերը մեր
Քեզ կ'ողջունեն, կը ցնծան,
Շատրուանը կը շողշողայ
Որպէս շքեղ ծիածան։
Ցոգնութիւնդ կ'անցնի մէկից,
Կը թարմանաս դու մի պահ,
Էլ չես յիշի, որ աշխարհում
Կայ ծերութիւն, վիշտ ու մահ:
Եւ երբ նայես մեր վարդագոյն
Պալատներին նորակերտ,
Որ աչքերը ժպիտով լի՝
Ասում-խօսում են քեզ հետ,

Էլ չես ուզի տուն գնալ դու,
Կը կախարդուես կը մնաս,
Եւ գիշերը քեզ կը թուայ
Հէքեաթային մի երազ։
Իմ մայիսեան Երեւանը
Մի տեսիլք է դիւթական,
Թէ չես տեսել, մի օր եկ տես,
Իմ հեռաւոր բարեկամ.
Մեր շէնքերը քանդակազարդ,
Կամարները գեղատես,
Ցայտաղբիւրները սառնորակ
Դու յաւիտեան կը յիշես։
Բայց ամենից պայծառ ու չինջ
Կը մնայ քո հոգու մէջ
Մեր հիւրընկալ երեւանցու
Պատկերը վառ ու անշէջ,
Նա, որ քարին շունչ է տալիս,
Կերտում է՛ւ տուն, է՛ւ պալատ,
Հոգով մեծ է, հպարտ ու վեհ,
Ինչպէս մեր սարն Արարատ։

ՍԱՐՄԷՆ

**ՋԱՀԱԿԻՐ**
ԵԳԻՊՏՈՍԻ ՀԱՅԿԱԿԱՆ ՄՇԱԿՈՒԹԱՅԻՆ ԵՐԿՇԱԲԱԹԱԹԵՐԹ

31 ՀՈԿՏ. 1968

# ՄԱՐԶԱԿԱՆ

## ՖՈՒԹՊՈԼ

### ԱՇԽԱՐՀԻ ՀԱՒԱՔԱԿԱՆԸ՝ ՊՐԱԶԻԼԻՈՅ ԴԷՄ

Նոյեմբեր 6ին, Պրազիլիոյ մայրաքաղաք Րիօ Տը Ժանէյրոյի մէջ տեղի կ'ունենայ ֆութպոլի աշխարհի հաւաքական խումբի հանդիպումը, աշխարհի կրկնակի ախոյեան Պրազիլի հաւաքականին հետ։

Հետաքրքրաշարժ այս հանդիպումը կազմակերպուած է ի յարգանս Պրազիլի ազգային հաւաքական խումբին Շուէտի մէջ տարած նախանձելի յաղթանակի տասնամեակին։

Ֆութպոլի միջազգային ֆետերասիոնի յատուկ մարմինը, որ իր առաջին նիստը գումարեց Մեքսիկայի «Կուատալահարա» քաղաքին մէջ, մամուլին յանձնեց աշխարհի 16 ուժեղագոյն ֆութպոլիստներուն անուանացանկը, որոնք իրենց մասնակցութիւնը պիտի բերեն ֆութպոլի այդ հանդիպումին։

Ահա կաշիէ գնդակի այդ «աստղերուն» ազգանունները։

Բերդապահներ՝ Մազուրքէվիչ (Ուրուկուէյ), Եաշին (Ս. Մ.), պաշտպաններ՝ Բերֆիումօ (Արժանթին), Շեշտէրնիով (Ս. Մ.), Շուլց (Արեւմտ. Գերմանիա), Մարզոլինի (Արժանթին), Կուինթանօ (Չիլի), Սիուչ (Հունգարիա)։

Կիսապահպաններ՝ Պէքէնպաուէր (Արեւմտ. Գերմանիա), Օսիմ (Եուկոսլաւիա), Օվերատ (Արեւմտ. Գերմանիա)։

Յարձակողական գիծ՝ Ալպէրթ և Ֆարքաշի (Հունգարիա), Մեթրեվէլի (Ս. Մ.), Ամանսով (Սպանիա) և Լաւիչ (Եուկոսլաւիա)։

Հունգարիա ֆութպոլի հայրենիքն է, որ երեք խաղացողներ կը նուիրէ աշխարհի հաւաքականին։ Ֆլորիան Ալպէրթը՝ նորէն իր արուեստով կը հիացնէ Պրազիլիոյ իր երկրպագուները։

Խումբի մարզիչի պարտականութիւնը յանձնուած է Է. Քրամէրին (Արեւմտեան Գերմանիա)։

ՅՈՎՀ. ՅՈՒՇԻԿ

Աթէնք

### «ԱՐԱՐԱՏ» (ԵՐԵՒԱՆ) ԵՒ «ՏԻՆԱՄՕ» (ՄԻՆՍՔ) 2-2

Երեքշաբթի, 22 Հոկտ., Երեւանի հանրապետական մարզադաշտին վրայ, խրաւարարութեամբ համամիութենական կարգի մրցավար Վ. Պարաշքովի, և ի ներկայութեան բազմահազար ֆութպոլասէրներու, տեղի ունեցաւ Ս. Միութեան 1968ի Ա. բաժնի ախոյեանութեան գծով, Մինսքի «Տինամօ» և Երեւանի «Արարատ» խումբերուն դարձի մրցումը, որ վերջացաւ հաւասար արդիւնքով՝ 2-2 (կիսախաղ 1-1)։

Կոլերը իրագործեցին «Արարատ»էն Քովալենքօ (32րդ վայրկեանին), Պոնտարենքօ (62րդ վայրկեանին), իսկ «Տինամօ»էն՝ Մալոֆէև (42րդ վայրկեանին և 73րդ վայրկեանին)։

### ՄԵՔՍԻԿԱՅԻ ՈՂԻՄՊԻԱԿԱՆԻՆ ԱՐԴԻՒՆՔՆԵՐԷՆ

#### ՀՈՒՆԳԱՐՈՒՀԻ ԱՆՃԵԼԱ ՆԻՄԹ ԱՇԽԱՐՀԻ ՆԻԶԱԿԻ ԱՐՁԱԿՄԱՆ ԱԽՈՅԵԱՆ (60.36 ՄԵԹՐ)

Կիներու նիզակի մրցումին այս տարի հունգարուհի Անճելա յաջողեցաւ արձակել նիզակը 60,36 մեթր և արժանացաւ ոսկեայ մետալին։ Բ. հանդիսացաւ ռումանուհի Միհայիլա Փինեզ (59.92 մեթր), իսկ պրոնզեայ մետալին արժանացաւ աւստրիացի Եվա Կանիքօ (58.04 մեթր)։

#### ԳԵՐՄԱՆՈՒՀԻ ՄԱՐԿՐԻՏ ԿԱՄԵԼ ԳՈՒՆՏԻ ԱԽՈՅԵԱՆ (19.61 ՄԵԹՐ)

Մարկրիտ Կամել յաջողեցաւ արձանագրել Ողիմպիականի նոր մրցանիշ մը՝ 19.61 մեթր, (նախկինը՝ 18.59 մեթր), Բ. տեղը կը գրաւէ իր հայրենակիցը Մարինա Լանկ (18.79 մեթր), իսկ Գ. տեղը կը գրաւէ Ս. Միութենէն Վատիզովա (18.19 մեթր)։

#### ԳԵՐՄԱՆՈՒՀԻ ԻՆԿՐԻՏ ՊԷՅՔԸՐ ԻԳԱԿԱՆ ՀՆԳԱՄԱՐՏԻ (ՓԵՆԹԱԹԼՈՆ) ԱԽՈՅԵԱՆ (5098 ԿԷՏ)

Իգական Փենթաթլոնի մրցումներուն (որ կը պարփակէ գունտի և նիզակի արձակում, բարձրութիւն, մէկ քայլ հեռաւորութիւն ցատկել և 200 մեթր վազք) Ինկրիտ Պէյքըր յաջողեցաւ առաջնութիւնը շահիլ հաւաքելով 5098 կէտ և արժանացաւ ոսկեայ մետալին։ Արծաթեայ մետալը ստացաւ աւստրիացի Լիզա (4966 կէտով) և պրոնզեայ մետալը՝ հունգարուհի Անաթոթ Դովաթէ (4659 կէտով)։

#### ՈՂԻՄՊԻԱԿԱՆԻ ԴՐՕՇԱՐՇԱՒՆԵՐԸ

Վազելով 38.2 երկվայրկեանէն, Ամերիկայի խումբը 4×100 մեթր դրօշարշաւին Ա. հանդիսացաւ և արժանացաւ ոսկեայ մետալին։

Բ. դիրքը գրաւեց Քուպա (38.3 երկվայրկեան), իսկ Գ. տեղը՝ Ֆրանսա (38.4 երկվայրկեան)։

— 4×400 մեթրի առաջնութիւնը դարձեալ ամերիկացիները շահեցան վազելով 2.56.1 վայրկեանէն, որ նոր մրցանիշ մըն է. (Նախկինը 2.56.6)։

Բ. հանդիսացաւ Քենիա (2.56.9 վայրկեան), իսկ Գ.ը՝ Արեւմտեան Գերմանիա (3.0.5 վայրկեան)։

— Աղջիկներու 4×100 մեթր վազքին նոյնպէս Ամերիկայի խումբըն է որ կ'արժանանայ ոսկեայ մետալին՝ 42.8 երկվայրկեանով, (աշխարհի նոր մրցանիշ. նախկին մրցանիշն էր 42.9 երկվայրկեան)։

Արծաթեայ մետալին արժանացաւ Քուպայի խումբը (43.3 երկվայրկեան) իսկ Ս. Միութեան խումբը արժանացաւ պրոնզեայ մետալին (43.4 երկվայրկեան)։

ՎԱՀԱՆ ԳԱԶԱՆՃԵԱՆ

## ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆՆԵՐ

(ԵԳԻՊՏԱՀԱՅ ԴԱՀԼԻՃԻ ՕՆԵՐՈՒ)

«ՋԱՀԱԿԻՐ»ԻՆ

Տէր և Տիկ. Գրիգոր և Մարօ Եղյանճեաններու (Նիւ Ճըրսի) մանչ զաւակով մը բախտաւորուած ըլլալնուն ուրախ առթիւ (և զոր անուանակոչած են Պետրոս), վասն շնորհաւորութեան Տէր և Տիկին Երուանդ Թաշճեան կը նուիրեն 100 ե.դ.։

### ԱՂԵՔՍԱՆԴՐԻՈՅ ՀԱՅԿԱԿԱՆ ԸՆԹԵՐՑԱՐԱՆԻՆ

Պր. Սեդրակ Պէրպէրեան 100 ե.դ. կը նուիրէ Պր. Պերճ Մազլըմեանի ընդ Օր. Լուսին Ջաքարեանի բարեբաստիկ ամուսնութեան ուրախ առթիւ։

Պր. Սեդրակ Պէրպէրեան 100 ե.դ. կը նուիրէ Պր. Բարսեղ Գարթալեանի ընդ Օր. Անի Ադամեանի բարեբաստիկ ամուսնութեան ուրախ առթիւ։

### ՍՏԱՑԱՆՔ

Շնորհակալութեամբ ստացանք «Արեւ» օրաթերթի խմբագիր Աւետիս Եափուճեանի «ՀԱՅ ԺՈՂՈՎՈՒՐԴԻՆ ՄԵԾ ԳՈՅԱՄԱՐՏԸ ԵՒ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹԻՒՆԸ ՍՏԵՂԾՈՂՆԵՐԸ» գրքոյկը, ճոխացած և ընդարձակուած փաստացի նոր տուեալներով։ Գինն է 20 ե.դ.։ Ստանալու համար դիմել «Արեւ»ի խմբագրութեան։

## ԶՈՒԱՐՃԱԼԻՔՆԵՐ

Գեղեցիկ մանկամարդուհի մը սիրահարած է երիտասարդի մը, եւ վստահ ըլլալու համար իր ապագային մասին, կը դիմէ թուղթ նայող կնոջ մը, որ հետեւեալը կ'ըսէ իրեն.

— Կը տեսնեմ գեղեցիկ երիտասարդ մը, որ ձեր կեանքին մաս կը կազմէ։

— Բայց արդէն մաս կը կազմէ։

— Չէք հասկնար։ Ան՝ որուն կ'ակնարկեմ 3 քիլօ 500 կր. պիտի կշռէ...։

## ՆԵՐՈՂՈՒԹԻՒՆ, ՁԵՌՔՍ ԱՂՏՈՏ Է...

(Շար. Ե. էջէն)

— Այն ատեն, կիներուն ձեռքը համբուրելու հին ձեւը կը պահենք, զոհացուցիչ է մասամբ մը...։

— Ասանկ չ'ըլլար, աւելի գործնական բարեւ մը գտիր։

— Ինչու չէ. անմիջապէս որ անձը ներկայանայ՝ դուն քեզ կը ձեռնես երկու ափերդ իրարու միացնելով, ինք ալ իր ափերը թող սեղմէ եթէ ուզէ, պրծաւ գնաց։

— Ի՞նչ լուծում պիտի տաս կղերականներու ձեռքերուն, համբուրե՞նք թէ թօթուենք զանոնք։

— Թէեւ ամէն Ս. Գիրք բռնողի ձեռքը մաքուր չ'ըլլար, սակայն արդէն կղերականները ընկերութեան նուազագոյն քանակը կը կազմեն եւ զանգուածէն հեռու կ'ապրին։

— Անոնց ձեռքերն ալ փրկենք ժողովուրդի լործունքոտ համբոյրէն։

— Այդ կարեւոր հարց մը չէ. Նայած իրենց ապրած երկրին՝ կը համբուրենք կամ կը սեղմենք անոնց ձեռքերը։ Եթէ Եւրոպայէմի մէջ են՝ համբուրելէ եւ սեղմելէ կը խուսափինք, մինչեւ որ չստուգենք թէ այդ ձեռքերը ձեռագիր տեղափոխելու գործով չեն աղտոտած...։

(Պէյրութ)

# ԱՅՆ ԿՌՈՒՆԿԸ ՈՐ ԻՆԿԱՒ…

(ՀՐԱՉ ԳԱԼԸՆԵԱՆԻ ՄԱՀՈՒԱՆ ՔԱՌԱՍՈՒՆՔԻՆ ԱՌԹԻՒ)

ԱՐՄԷՆ ՏԱՏՈՒՐ

Ի՛նք ալ չէր հաւատար թէ վերջը մօտ էր այնքան։

Կազդուրուած ու կենսունակ վերադարձած էր Հայաստանէն։

Հպարտութեամբ ըսած էր անցեալ տարի, երկու հազար քիլոմեթր շրջելէ ետք հայրենիքի մէջ. «Հայաստանցի՛ն անգամ չէ տեսած այն ամէնը՝ որ ես տեսայ երկրին մէջ» ու կ'աւելցնէր. «Շատ բան ունիմ տակաւին տեսնելիք ու ճանչնալիք։ Յաջո՛րդ անգամ»….։

Ա՜յնքան խանդավառ ու լաւատես էր Հայրենիքի, մեր ժողովուրդին ամրակուռ ներկայէն բխող ապագային նկատմամբ։

Շատ բան ձգած էր «Յաջորդ անգամ»ին…։ Ու յանկարծ՝ իր մահուան գոյժը:

Երկու բառ թռան մեր սիրտէն. «Մե՜ղք եղաւ»….։

Հրաչ մեր աշխարհէն այն կռունկն էր՝ որ հազիւ հասած այս ափերը, ինկաւ խոցուած սիրտէն….։

Ա՛լ պիտի չտեսնենք այդ հայրենասէր հայը, որ ժպիտ ու եռանդ, սիրտ ու կորով կը բաշխէր շուրջը։ Պիտի չլսենք իր նորագոյն վկայութիւնները՝ մեր հայրենիքին ու ժողովուրդին մասին, պիտի չտեսնենք Հրաչին աչքով՝ մեր հրաշագեղ բնութիւնն ու սքանչելի մարդիկը:

Որսո՛րդ էր Հրաչ՝ բառին շքեղ ու լայն առումով: Իր տարրն էր բնութիւնը. Իր սուր ու իրատես աչքը կ'որոնէր ու «կ'որսար» իրողութիւններ ու յատկանշական դէպքեր՝ որոնք կրնային դիւրաւ վրիպիլ ուրիշի մը աչքէն.

Իր անկեղծ ու տաքսիրտ ըլլալը, ընկերական ու խիզախ բնաւորութիւնը, որսորդի և հիւրասէրի մեծ համբաւին հետ՝ լայն բացեր էին իր առջեւ ամէն դուռ ու դիւանատուն: Զէնքի վրայ չէր հիմնուած իր բարեկամութիւնը։ Իր անհատականութիւնն էր իր զէնքը՝ որով «կ'որսար» իր բարեկամներն ու կը հալածէր հակառակորդները։

Ո՜րքան թարմ ու թանկագին յիշատակներ ու քաղուած աղուոր վկայութիւններ կը խորտակուին



ՈՂԲ. ՀՐԱՉ ԳԱԼԸՆԵԱՆ
(վերջին լուսանկար)

ահա՝ իր մահով, առանց լոյս աշխարհ գալու:

Մե՜ղք….։

Կռունկը ա՛լ պիտի չվերադառնայ….։

Հրաչ եղաւ կեանքի մէջ յաջողած հայրն ու երկաթ կամքի տէր մարդը՝ որ մարմին տուաւ իր երազներուն, կրցա՛ւ կարօտն առնել Մայր Հայրենիքէն ու հարազատներէն՝ չմեկնած այս աշխարհէն:

Գործնական, իրատե՛ս միտք էր Հրաչ Գալընեան. երբեք՝ բանաստեղծական թռիչքներով հարուստ մէկը։ Ունէր տաք հաղորդականութիւն մը, որ զինք անմիջապէս կը դարձնէր հին բարեկամ մը։ Կեանքի պայքարի մէջ թրծուած՝ ան խիզախ էր խօսքի ու գիրի մէջ հաւասարապէս: Կը քննադատէր երբ հրամայական էր ատիկա՝ հայուն շահին ու բարիքին համար: Կը պայքարէր առողջ գաղափարի մը սիրոյն: Շեշտակի էր իր հարուածը, որ չէր վիրաւորեր, այլ կը զգետնէ՛ր։ Մարզասէր ոգիով՝ ինք ազնուական որսորդն էր։

Չկար իրեն համար միջին ճամբայ, մեղմ լուծում որպէսզի ոչ ոք չվշտանար իրմէ։ Հոգ չէր ըներ թէ ուրիշը ի՞նչ կ'ըսէր, երբ գիտէր իր ըրածը ճիշդ էր։

Մինակը կրնար կատարել գործ մը՝ որ Գաղութն իր ամբողջ պատկառանքով՝ չէ՜ր փորձած կամ մտածած ընելու:

«Մեծ Զուլումին Ցիսնամեակը» ալպոմով՝ Հրաչ Գալընեան տուաւ ոչ միայն փաստ իր հայրենասիրութեան, այլ իւղի իր կաթիլը՝ հայ Դատին։

Ինք ունէր, կրնար տալ, տուա՛ւ։

Ուրիշներ ունէին, կրնայի՛ն տալ, չտուին սակայն մա՛զ մը անգամ։

Երախտապարտ ենք Հրաչին՝ իր այս գործին համար մանաւանդ:

… Պիտի գան նոր գարուններ, ուրիշ կռունկներ պիտի տեսնեն հայրենիքն ու վերադառնան մեզի՝ մի՛շտ նոր ու խանդավառ խապրիկներով բեռնաւոր։

Մի՛շտ պիտի յիշենք սակայն այն կռունկը՝ որ ինկաւ եգիպտական ծովափին՝ սրտախոց, կա՛նչը շրթունքին:

Հելիոպոլիս, Նոյ. 1968

---

ՄԱՍՆԱՒՈՐ «ՋԱՀԱԿԻՐ»ԻՆ

## ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ

Երբ աշխարհին հրաժեշտ տամ,
Բնութեան նոր մասնիկ դառնամ…
Սիրելիներս չպէտք է լան,
Սեւեր հագած, թախծոտ ման գան։
Ու չկարծեն երբեք նրանք
Որ էլ չունեմ ես աշխատանք:

Իմ մարմինը անշնչացած,
Ջարի, հողի հետ միացած,
Որոնելով այլ ճանապարհ,
Կը գայ նորից, մի օր, աշխարհ…
Նա կը ծլի, կը բողբոջէ,
Սիրուն, դալար ճիւղ կ'արձակէ։

Կը տայ երկրին պէս պէս բոյսեր,
Բոյսեր՝ բուժող հազար վէրքեր.
Կը տայ համեղ, քաղցր մրգեր,
Բուրումնաւէտ վառ ծաղիկներ.
Կը տայ ցորեն; արմտիքներ,
Կենսապարգեւ բիւր բարիքներ։

Ու նրանց հետ վերածնուած
— Իմ մարմինը հողում թաղուած-
Այլափոխուած այլ կերպարով,
Իրա կերտած ճանապարհով,
Կ'ելլէ իր «հող ապաստանից,
Կը գա՛յ աշխարհ… կ'ապրի նորից»։

ԵՐԵՒԱՆ

ՊԱՅԾԱՌ ԵՐԿԱԹ

---

## ԱՆԺԱՄԱՆԱԿ ԲԱԺԱՆՈՒՄԸ

Հրաչ Գալընեանի յանկարծական մահը շանթահարեց իր բարեկամներն ու ծանօթները, որոնք անգիտակ էին՝ որ իրենց հետ շրջման մէջ եկող զուարթ և կատակաբան բարեկամը մէկէն պիտի բաժնուէր իրենցմէ։

Երկա՜ր, շա՜տ երկար տարիներէ ի վեր կը ճանչնայի զինք։ Հայկական մեծ աղէտէն ազատուած տղայ մըն էր՝ որ իր ժրաջան աշխատութեամբ, կեանքի պայքարին մէջ չարաչար կռուելով՝ աստիճանաբար դարձաւ տիպար հայրն իր ընտանիքին, ազգասէր և օգտակար զաւակը իր ազգին։

Իր երեք զաւակներուն տըւաւ նախ հայկական դաստիարակութիւն՝ երբ կնիքը կամ հիմնաքարն հայութեան։ Ազգային դաստիարակութենէն ետք՝ օտար դըպրոցներու մէջ կատարել գործեց անոնց ուսումը, որպէսզի դիւրաւ կարողանան շփման գալ օտարներուն հետ՝ իրենց ապագայ գործունէութեանց ատեն:

Թունդ ազգասէր և հայրենասէր մըն էր ան։ Մինչտնիւթապէս, բարոյապէս և իր գրչով աջակցեցաւ զանազան ակումբներու և սըրահներու՝ որոնց նպատակն է հայ նոր սերունդը ազատել ճերմակ ջարդէն: Առաջին եգիպտահայերէն եղաւ որ Մայր Հայրենիքը կապեց մեր գաղութին:

Ամրակուռ շղթայով միացուց Հայաստանը Եգիպտահայուն հետ: Ամէն միջոց գործածեց որպէսզի օտար հողերուն վրայ ապրող հայերը չձուլուին, հրապուրեց զանոնք Հայաստանի գովասանքներն ընելով։

Թէ ընտանեկան և թէ ազգային պարտականութիւնները լիովին կատարելէ ետք՝ սրտի գոհունակութեամբ հեռացաւ ան մեզմէ։

Թող իր ազգասիրական սերմերը առատ յունձք տան՝ որպէս զի օրհնեալ և անթառամ մնայ իր յիշատակը մեր սրտերուն մէջ։

ՍԳԱԿԻՐ ԲԱՐԵԿԱՄ ՄԸ

---

# ԵՐԵՒԱՆ

Խօսք՝ Պ. ՍԵՒԱԿԻ

Երաժշտ.՝ Է. ՅՈՎՀԱՆՆԻՍԵԱՆԻ






